Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 5 ՄԱՐՏ 1951

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին: Հեռախոս՝ 2—52—78:

### ՍՍՌՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏՈՒՄ ԵՎ ՀԱՄԿ(բ)Պ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ

## ՊԱՐԵՆԱՅԻՆ ԵՎ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԱՊՐԱՆՔՆԵՐԻ ՊԵՏԱԿԱՆ ՄԱՆՐԱԾԱԽ ԳՆԵՐԻ ՆՈՐ ԻՋԵՑՄԱՆ ՄԱՍԻՆ

1950 թվականին արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման ասպարեզում ձեռք բերված նոր հաջողությունների, աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման կապակցությամբ Սովետական Կառավարությունը և ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն հնարավոր համարեցին իրագործել մասսայական սպառման ապրանքների պետական մանրածախ գների նոր՝ թվով չորրորդ, իջեցում:

ՍՍՌ Միության Մինիստրների Սովետը և ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն ՈՐՈՇԵՑԻՆ.

1. 1951 թվականի մարտի 1-ից պարենային և արդյունաբերական ապրանքների պե-



տական մանրածախ գները իջեցնել հետևյալ չափերով.

### ՀԱՑ ԵՎ ԲՈՒԼԿԵՂԵՆ

Տարեկանի, ցորենի հաց, բուլկի, բարանկի և այլ բուլկեղեն 15%-ով
Դրոժ 15%-ով

### ԱԼՅՈՒՐ

Տարեկանի, ցորենի, եգիպտացորենի ալյուր և այլ ալյուր 15%-ով

### ԿՐՈՒՊԱ, ԲՐԻՆՁ ԵՎ ԼՈԲԱԶԳԻ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐ

Կորեկաձավար, գրեչիխա, այլ կրուպեղեն, բրինձ, սիսեռ և այլ լոբազգի կուլտուրաներ 15%-ով

### ՄԱԿԱՐՈՆԵՂԵՆ ԵՎ ՍՆՆԴԻ ԿՈՆՑԵՆՏՐԱՏՆԵՐ

Մակարոն, վերմիշել, լապշա և սննդի կոնցենտրատներ 15%-ով

### ՀԱՑԱՀԱՏԻԿ ԵՎ ՖՈՒՐԱԺ

Տարեկան, ցորեն, վարսակ, գարի և հացահատիկի այլ տեսակներ, թեփ, քուսպ, կոմբինացված կեր, խոտ և ծղնոտ 15%-ով



### ՄԻՍ ԵՎ ՄՍԱՄԹԵՐՔՆԵՐ

Տավարի միս, ոչխարի միս, խոզի միս, թռչուն, երշիկ, սոսիսկի, սարդելկա, կոտլետ, մսի, մսաբուսական ու ճարպա-լոբեղեն պահածոներ և այլ մսամթերքներ 15%-ով

### ՁՈՒԿ ԵՎ ՁԿՆԵՂԵՆ ԱՊՐԱՆՔՆԵՐ

Ձուկ, սելդ, ձկան պահածոներ, սև և կարմիր ձկնկիթ և այլ ձկնեղեն ապրանքներ 10%-ով

### ՅՈՒՂԵՂԵՆ, ՊԱՆԻՐ, ԿԱԹՆԱՄԹԵՐՔՆԵՐ

Կենդանական յուղ 15%-ով
Սննդի ճարպ, մարգարին, պանիր, կաթ ու կաթնամթերքներ, կաթի պահածոներ, պաղպաղակ և ձու 10%-ով

### ՀՐՈՒՇԱԿԵՂԵՆ ԵՎ ՆՊԱՐԵՂԵՆ ԱՊՐԱՆՔՆԵՐ

Պեչենի, վաֆլի, կեկս, պիրոժնի, տորտ, պրյանիկ և այլուրից պատրաստված այլ հրուշակեղեն 10%-ով
Թեյ, սուրճ, թեյի, սուրճի և կակաո խմիչքներ 10%-ով
Աղ 21%-ով

### ՕՂԻ, ԼԻԿՅՈՐ ԵՎ ԿՈՆՅԱԿ

Օղի, լիկյորներ, պտղօղի և թրմօղի 10%-ով
Կոնյակ 10%-ով

## ՏՈՄԱՏԻ ԵՎ ՄՐԳԵՂԵՆԻ ՀՅՈՒԹԵՐ

Տոմատի ու մրգեղենի հյութեր և սոուսներ 10%-ով

## ՍՈՅԱՅԻՑ ՊԱՏՐԱՍՏՎԱԾ ՄԹԵՐՔՆԵՐ

Սոյայի պանիր, կեֆիր, սոուսներ, սոյաբլինի ալյուր և սոյայից պատրաստված այլ մթերքներ 15%-ով

## ՕՃԱՌ ԵՎ ՊԱՐՖՅՈՒՄԵՐԱՅԻՆ-ԿՈՍՄԵՏԻԿ ԱՊՐԱՆՔՆԵՐ

Լվացքի և ձեռքի օճառ 15%-ով

Դուխիներ, օդեկոլոններ, այուրպրիզային նվիրատուփեր և պարֆյումերային-կոսմետիկ այլ ապրանքներ 10%-ով

## ԾԽԱԽՈՏ

Գլանակներ, սիգարետներ և ծխախոտ 10%-ով

Մախորկա 15%-ով

## ԿԱՀՈՒՅՔ

Սեղաններ, աթոռներ, պահարաններ, բազմոցներ և կահույքի այլ տեսակներ 20%-ով

Մետաղյա մահճակալներ 20%-ով



## ՀԱԽՃԱՊԱԿԵ, ՃԵՆԱՊԱԿԵ ԵՎ ԱՊԱԿՅԱ ԻՐԵՐ

Հախճապակե, ճենապակե ամանեղեն և գեղարվեստական իրեր 20%-ով

Թեյի բաժակներ և այլ ապակյա ու տնտեսական ամանեղեն, լամպեր և ճայթեր 10%-ով

## ԼՈՒՅԿԻ, ԿԵՐՈՍԻՆ ԵՎ ԲԵՆԶԻՆ

Լուցկի 20%-ով

Կերոսին 22%-ով

Բենզին 20%-ով

## ՌԱԴԻՈԸՆԴՈՒՆԻՉՆԵՐ, ՀԵԾԱՆԻՎՆԵՐ, ՄՈՏՈՑԻԿԼԵՏՆԵՐ ԵՎ ԺԱՄԱՑՈՒՅՑՆԵՐ

Ռադիոընդունիչներ և այլ ռադիոապրանքներ 10%-ով

Հեծանիվներ, մոտոցիկլետներ և դրանց պահեստի մասեր 10%-ով

Ձեռքի, գրպանի և այլ ժամացույցներ 10%-ով

## ՇԻՆԱՆՅՈՒԹԵՐ

Շիֆեր և փափուկ ծածկ 20%-ով

Պատուհանի ապակի 20%-ով

Մեխ և գլանված երկաթալար 10%-ով

Տանիքի և տեսակավոր բիբեղ 10%-ով

| | |
|---|---|
| Ցեմենտ | 10%-ով |
| Պաստառ | 10%-ով |

**ՏՆՏԵՍԱԿԱՆ ԳՈՐԾԱԾՈՒԹՅԱՆ ԱՊՐԱՆՔՆԵՐ**

| | |
|---|---|
| Կարի մեքենաներ և դրանց պահեստի մասեր | 10%-ով |
| Մսաղացներ, կերոսինկաներ, կերոգազեր, պրիմուսներ և դրանց պահեստի մասեր | 10%-ով |
| Դանակներ | 10%-ով |
| Կողպեքներ | 10%-ով |
| Երկաթյա իրեր | 10%-ով |
| Վառարանային ձուլվածք, պլիտայի վրա և ածուխով տաքացվող արդուկներ | 10%-ով |
| Կացիններ, բահեր, գերանդիներ և եղաններ | 10%-ով |
| Թամբա-լծասարքային ապրանքներ | 10%-ով |
| Պլաստմասսայից պատրաստված իրեր | 10%-ով |

2. Համապատասխանորեն գները իջեցնել ռեստորաններում, ճաշարաններում, բեյարաններում և հասարակական սննդի ուրիշ ձեռնարկություններում:



# ԱԳԻՏԱՑԻՈՆ-ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՆՈՐ ԽՆԴԻՐՆԵՐԸ

*Պարտիական կազմակերպությունների ծավալած ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքը մեծ դեր խաղաց կոմունիստների և անպարտիականների ստալինյան բլոկի փայլուն հաղթանակում Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների ժամանակ: Ագիտկոլեկտիվները և ամեն մի ագիտատոր այդ կամպանիայի ժամանակ կուտակեցին հարուստ փորձ:*

*Ընտրություններից հետո, մանավանդ գյուղական շրջաններում գարնան գյուղատնտեսական աշխատանքների սկսման ու ծավալման ժամանակամիջոցում պարտկազմակերպությունների առջև դրվում են նոր, պատասխանատու խնդիրներ քաղաքական ագիտացիայի ծավալման և մասսայական աշխատանքները կազմակերպելու գործում:*

*Այդ նոր խնդիրները պահանջում են, որպեսզի թե՛ քաղաքներում և թե՛ գյուղերում ագիտացիոն-մասսայական աշխատանքի*

թափը ոչ միայն չիջեցվի, այլ, ընդհակառա-կը, ագիտացիոն աշխատանքը վերակառուցվի նոր խնդիրներին համապատասխան, այն փոխադրվի բնակչության բոլոր խավերի մեջ, հիմնարկներում թե՛ արտադրական ձեռնար-կություններում, կոլխոզային դաշտերում, թե՛ անասնապահական ֆերմաներում, ինչ-պես նաև թաղամասերում և տներում։

Հաշվի առնելով այդ խնդիրները, պար-տիական կազմակերպությունները միջոցա-ռումներ են ձեռնարկում ագիտացիոն աշ-խատանքի կազմակերպական կողմն ապա-հովելու համար։

Գյուղական պարտշրջկոմներից շատերը վերջերս անց են կացրել պարտկազմակեր-պությունների քարտուղարների և ագիտկո-լեկտիվների ղեկավարների միացյալ խոր-հրդակցություններ և սեմինար պարապ-մունքներ։ Այդ խորհրդակցություններում մանրամասն քննարկվել են ագիտկոլեկտիվ-ների աշխատանքները վերակառուցելու և նախկին ընտրական տեղամասի, օկրուգի փոխարեն ագիտացիան կոլխոզային բրիգա-դաների ու մեքենատրակտորային կայանն-երի աշխատողների մոտ, դաշտ տեղափոխելու կոնկրետ հարցերը։ Բոլոր ագիտկոլեկտիվ-ները պահպանվում են սկզբնական պար-



տիական կազմակերպությունների կից։ Նրանց կազմը համալրվում է նոր ագիտա-տորներով մասնագետներից և ուրիշ կարող ուժերից։

Քաղաքներում և ավաններում նույնպես պարտկազմակերպությունները լայն աշխա-տանք են կատարում ագիտկոլեկտիվների գործունեությունը ծավալելու արտադրական ձեռնարկություններում, հիմնարկություննե-րում և բնակչության մեջ։

Քաղաքի ռայոններում գումարված ագիտ-կոլեկտիվների ղեկավարների և պարտկազ-մակերպությունների քարտուղարների խոր-հրդակցությունները քննարկելով այդ հար-ցերը, անհրաժեշտ հրահանգավորում տվե-ցին տեղերում ագիտացիոն-մասսայական աշխատանքը կազմակերպելու ուղղությամբ։ Սակայն դրանով բավարարվել չի կարելի։

Պարտռայկոմների պրոպագանդայի և ա-գիտացիայի բաժինների անհետաձգելի խըն-դիրն է ագիտկոլեկտիվների աշխատանքը վերակառուցել մինչև վերջը, յուրաքանչյուր ագիտատորին ամրացնել բրիգադայի, ագ-րեգատի, ցեխի, կամ քաղաքում բնակչու-թյան այս կամ այն խմբին՝ ըստ բնակու-թյան վայրի։ Գործը պետք է կազմակերպել այնպես, որ բոլոր աշխատավորները, տըն-

տեսուհիները լիովին ներգրավվեն քաղաքական ագիտացիայի մեջ և սիստեմատիկաբար նրանց բացատրվի պարտիայի ու կառավարության քաղաքականությունը։

Ագիտացիոն աշխատանքի նոր խնդիրներից է թեմատիկայի ընդարձակման ու բարելավման հարցը։ Անհրաժեշտ է ընդարձակել քաղաքական զրույցների թեմատիկան։ Գլխավոր ուշադրությունը դարձնելով Սովետական Միության արտաքին քաղաքականության և ընկեր Ստալինի «Պրավդա»-ի թղթակցի հարցերին տված պատասխանների բացատրությանն ու պարզաբանմանը, ագիտացիայի միջոցով պետք է աշխատավորների մեջ լայնորեն մասսայականացնել Խաղաղության Համաշխարհային Խորհրդի պատմական որոշումները, դիմակազերծ անելով ամերիկա-անգլիական ագրեսորներին։

Ագիտացիոն աշխատանքի կարևորագույն խնդիրներից մեկն էլ սովետական կառավարության ներքին քաղաքականության հարցերի, աշխատավորների նյութական բարեկեցության բարելավման գծով պարտիայի և կառավարության կիրառած միջոցառումների պրոպագանդան է. ագիտատորները պետք է զրույցներ անցկացնեն գների նոր



իջեցման, սովետական պետական բյուջեի, կոմունիզմի նորակառույցների և ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի բնագավառներում ձեռք բերած հաջողությունների մասին։

Գյուղական շրջաններում, կոլտնտեսություններում ու մեքենատրակտորային կայաններում ագիտացիոն աշխատանքի կենտրոնում պետք է դրված լինեն քաղաքական թեմաների հետ միասին նաև ագրո-զոոտեխնիկական գիտելիքներին նվիրված զրույցները և զեկուցումները։ Անհրաժեշտ է կոլտնտեսականներին, մեքենատրակտորային կայանների և սովխոզների բանվորներին ամեն օր բացատրել սովետական գիտության նվաճումները, առաջավորների փորձը, նրանց սովորեցնել գիտության և առաջավոր փորձի լայն կիրառումով ապահովել բարձր բերքատվությունն ու անասնաբուծության մթերատվության հարաճուն վերելքը։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքի հաջողությունն ամբողջովին կախված է ագիտկոլեկտիվների կազմակերպական ղեկավարությունից։ Պարտկազմակերպությունների քարտուղարները, որ միաժամանակ հանդիսանում են ագիտկոլեկտիվների ղեկավարները, պարտավոր են սիստեմատի-

կաբար հրահանգավորել ագիտատորներին, նրանց ցույց տալ կոնկրետ ղեկավարություն և օգնություն, հետևել նրանց աշխատանքին։

Պարտիայի քաղկոմ-շրջկոմների պրոպագանդայի և ագիտացիայի բաժինները պետք է սիստեմատիկաբար կազմակերպեն կոնսուլտացիաներ, դասախոսություններ ու զեկուցումներ ագիտկոլեկտիվների ղեկավարների, ինչպես նաև ագիտատորների համար, նրանց ցույց տալով մեթոդական օգնություն, զինելով քաղաքական և գյուղատնտեսական հարուստ գիտելիքներով, ապահովեն ագիտացիոն աշխատանքի լայն ծավալն ու թափը։



---

# ԳԱՐՆԱՆԱՑԱՆԸ ԵՎ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում, ՄՏ կայաններում և սովխոզներում այժմ լարված աշխատանք է կատարվում գարնան-գյուղատնտեսական աշխատանքները բազմակողմանի կերպով նախապատրաստելու գործում։

Արդեն որոշ տեղերում սկսվել է գարնանացանը։ Շրջանային պարտիական, սովետական կազմակերպությունների, հողային օրգանների, բոլոր կոլտնտեսականների, ՄՏ կայանների ու սովխոզների աշխատողների մարտական խնդիրն է՝ արագորեն բոլոր կոլտնտեսությունները, ՄՏ կայաններն ու սովխոզները նախապատրաստել գարնանացանին՝ այն բարձր կազմակերպվածությամբ ու ագրոտեխնիկական սեղմ ժամկետում կատարելու համար։

Բոլշևիկների պարտիայի ու սովետական պետության կողմից 1951 թվականին նոր և պատասխանատու խնդիրներ են դրված գյուղատնտեսության աշխատողների առջև։

Գյուղատնտեսության զարգացման 1951 թվականի պլանով նախատեսվում է զգալի չափով բարձրացնել սոցիալիստական դաշտերի բերքատվությունը, հանրային անասնապահության զարգացման արագ վերելքը, ինչպես և ավելացնել գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների համախառն բերքը։

1951 թվականը մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության համար պետք է հանդիսանա ամենաբարձր բերքատվության տարի։

Ռեսպուբլիկայի հացագործները վճռական պայքար են ծավալել՝ ռեսպուբլիկան սեփական հացով ապահովելու վերաբերյալ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը կենսագործելու համար։

Ինչպես հայտնի է, ընկեր Ստալինի նախաձեռնությամբ ընդունված այդ որոշման համաձայն, մոտակա 4—5 տարիների ընթացքում պետք է ընդարձակվի ցորենի ցանքային տարածությունը և ապահովվի նրա բարձր բերքատվությունը, այն հաշվով, որ մոտակա տարիներում ռեսպուբլիկան իրեն լրիվին ապահովի սեփական արտադրության հացով։

Միութենական կառավարության կողմից ցույց տրված հսկայական օգնության շնորհիվ, ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները



1950 թվականի աշնանացանի պլանը կատարեցին 102,3 տոկոսով. 1949 թվականի համեմատությամբ 1950 թվականի աշնանը 27,6 հազար հեկտարով ավելի աշնանացան կատարվեց։

Այժմ տեղական պարտիական, սովետական կազմակերպությունների, հողային օրգանների խնդիրն է՝ այնպես նախապատրաստել և անցկացնել գարնան-գյուղատնտեսական աշխատանքները, որ հնարավոր լինի գարնանացանին զուգընթաց կատարել աշնանացանի գարնան մշակման աշխատանքները, ժամանակին ու բարձր որակով կատարել աշնանացանի սնուցումը հանքային ու տեղական պարարտանյութերով, փոցխումը, ինչպես և գարնանը հալվող ձյան ջրի հավաքելը և նրանով ցանքային տարածությունների ոռոգումը, դրանով իսկ ապահովելով աշնանացան և գարնան ցորենի ցանքատարածության բերքատվության բարձրացումը։

Բացի այդ, կարևոր խնդիրներից մեկն էլ հանդիսանում է բամբակի, ծխախոտի, շաքարի ճակնդեղի և տեխնիկական մյուս կուլտուրաների բերքատվության զգալի բարձրացումը, որը մեր ժողովրդի բարեկեցության, կոլտնտեսականների ունևոր

կյանքի աղբյուրներից մեկն է։ Այս կարևոր խնդիրները կատարելու համար մեր բոլոր կոլտնտեսություններում, ՄՏ կայաններում և սովխոզներում կան ռեալ հնարավորություններ։

Այժմ տեղական պարտիական, սովետական կազմակերպությունների, Գյուղատնտեսության մինիստրության ու նրա օրգանների խնդիրն է՝ առաջիկա օրերում լրիվ ու բարձր որակով ավարտել մեքենատրակտորային ու մեքենա-անասնապահական կայանների տրակտորների ու այլ գյուղատնտեսական մեքենաների նորոգումները։ Դրա հետ միասին առանձնակի ուշադրություն պետք է դարձնել մեխանիզատորական կադրերի պատրաստման ու վերապատրաստման գործին, այն հաշվով, որպեսզի բոլոր ՄՏ կայանները, տրակտորային բրիգադաներն ապահովված լինեն երկհերթ աշխատանքի համար որակյալ տրակտորիստներով, որպեսզի ամեն մի տրակտորիստ կատարի իր հերթափոխության պլան-առաջադրանքը։

Գյուղատնտեսական բարդ մեքենաները բարձր արտադրողականությամբ օգտագործելու համար հարկավոր է լուրջ կերպով ըզբաղվել տրակտորիստների, տրակտորային



բրիգադայի բրիգադիրների, կոմբայնավարների և մյուս կադրերի որակավորման հարցերով։ Դրա համար պետք է ՄՏ կայաններում կազմակերպել սեմինար պարապմունքներ՝ առանց արտադրությունից կտրվելու, բարձրացնել նրանց որակավորումը և լայն կերպով ուսումնասիրել առաջավոր մեխանիզատորների փորձը, այն խելացի կերպով ներդնել արտադրության մեջ։

Մանր կոլտնտեսությունների միավորման, խոշոր-արտելային տնտեսությունների ըստեղծման վերաբերյալ պարտիայի և կառավարության ձեռնարկած միջոցառումները մեծ հնարավորություններ են բացել հարուստ տեխնիկայի օգտագործման, կոլտնտեսությունների տնտեսական-կազմակերպական ամրապնդման, սոցիալիստական գյուղատնտեսության ու կուլտուրայի հետագա զարգացման համար։

Ռեսպուբլիկայում հաջողությամբ ընթանում է կոլտնտեսությունների խոշորացումը, որը արդեն ցույց է տալիս խոշորացման մեծ առավելությունները։ Խոշորացված կոլտնտեսությունները հիմնականում պատրաստ են գարնանացանին։ Սակայն, անհրաժեշտ է նշել, որ Բասարգեչարի, Ամասիայի, Ղուկասյանի, Սիսիանի, Կրասնոսելսկի, Գորի-

սի, Արթիկի, Ալինի շրջաններում առանձին կոլտնտեսություններ դեռևս լրիվ չեն նախապատրաստվել գարնան-գյուղատնտեսական աշխատանքներին, դեռ լրիվ չեն ապահովված գարնանացան ցորենի սերմացուով, միանգամայն դանդաղ է ընթանում շարքային հացահատիկի փոխանակումը տեսակավոր սերմացուի հետ, ինչպես և կոլտնտեսություններում արտադրական պլանների կազմման, դաշտավարական բրիգադաներին ու անասնապահական ֆերմաներին արտադրական առաջադրանքներ տալը և նրանց կազմի ճիշտ կոմպլեկտավորումը։

Գարնանացանը հաջողությամբ ավարտելու գործում վճռական նշանակություն ունի աշխատանքի ճիշտ կազմակերպումը կոլտնտեսություններում, դաշտավարական բրիգադաների ամեն կերպ ամրացումը, պարտիայի ու կառավարության դիրեկտիվներն այս հարցում ճիշտ կիրառելը։ Ունենալ ամուր կազմակերպված դաշտավարական բրիգադա այդ նշանակում է ստեղծել լայն հնարավորություններ՝ բարձր արտադրողականությամբ օգտագործելու գարնանացանի ընթացքում այնպիսի վճռական ուժ, ինչպիսին հանդիսանում են ՄՏ կայանների պարկը, ինչպես և ճիշտ օգտա-



գործել կոլտնտեսությունում, բրիգադայում եղած հնարավորություններն ու ռեզերվները։

Սակայն, անհրաժեշտ է նշել, որ Ամասիայի, Ղուկասյանի, Ալավերդու, Արթիկի, Ղափանի և այլ շրջանների մի շարք կոլտնտեսություններում աշխատանքի կազմակերպումը գտնվում է ոչ պատշաճ բարձրության վրա. դաշտավարական բրիգադաներում դեռ գոյություն ունի հոսունություն, թույլ է աշխատանքային կարգապահությունը, դեռ կան բավականին թվով կոլտնտեսականներ, որոնք չեն կատարում աշխօրերի պարտադիր մինիմումը և այլն։

Աշխատանքի ճիշտ կազմակերպումը կոլտնտեսություններում սեզոնային գործ չէ, այլ դա մշտապես պետք է դրված լինի պարտիական կազմակերպության ուշադրության կենտրոնում։

Գարնանացանը սեղմ ժամկետում ու կազմակերպված անցկացնելու համար վճռական նշանակություն ունի կոլտնտեսություններում, ՄՏ կայաններում, սովխոզներում սոցիալիստական մրցության լայն ծավալումն ու ագիտացիոն-մասսայական աշխատանքի խելացի կազմակերպումը։ Ագիտատորների խնդիրը պետք է կայանա նրանում, որ պարտիական կազմակերպություն-

ների ղեկավարությամբ գործադրվեն ագիտացիոն աշխատանքի բոլոր ձևերն ու մեթոդները, անհատական ու խմբակային զրույցների միջոցով, յուրաքանչյուր կոլտնտեսականի, ՄՏ կայանի ու սովխոզի յուրաքանչյուր աշխատողի գիտակցությանը հասցնել գյուղատնտեսության զարգացման 1951 թվ. պլանների կատարման անհրաժեշտությունը։ Ագիտացիոն աշխատանքն այնպես պետք է կատարվի, որպեսզի յուրաքանչյուր կոլխոզնիկ, ՄՏ կայանի ու սովխոզի ամեն մի աշխատող ճիշտ հասկանա գարնան-գյուղատնտեսական աշխատանքներին իր մասնակցության չափն ու նրա կատարման անհրաժեշտությունը, դրանով իսկ մոբիլիզացնել բոլոր կոլտնտեսականներին, ՄՏ կայանների ու սովխոզների աշխատողներին՝ գարնանացանն ագրոտեխնիկական սեղմ ժամկետում կատարելու համար։

Լ. ՇԱՀԲԱԶՅԱՆ





## ԵՐԵՎԱՆԻ ,,ԱՎՏՈԴԵՏԱԼ" ԳՈՐԾԱՐԱՆԻ ԿՈԼԵԿՏԻՎԻ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅՈՒՆԸ

Ռեսպուբլիկայի աշխատավորները Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի 15-րդ համագումարը դիմավորում են կուլտուրական և տնտեսական շինարարության բոլոր բնագավառներում ձեռք բերած նոր, հիանալի հաջողություններով։ Մեր արդյունաբերությունը և գյուղատնտեսությունը հաջողությամբ կատարեցին հետպատերազմյան ստալինյան հնգամյա պլանը։ Մեծ են նվաճումները նաև կուլտուրայի, գիտության ասպարեզում, քաղաքների ու գյուղերի բարեկարգման, աշխատավորների բարեկեցության բարձրացման գործում։

Կենսագործելով Հայաստանի Կոմունիստական պարտիայի 14-րդ համագումարի որոշումները, ռեսպուբլիկայի աշխատավորները արդյունաբերության բնագավառում հնգամյակը կատարեցին դեռ 1949 թվակա-

նին։ Արդյունաբերության 1950 թվականի պլանը կատարվեց 103 տոկոսով։ Ստալինյան ռայոնի արդյունաբերական ձեռնարկությունները միայն անցյալ տարի յուրացրին արտադրանքի ավելի քան 30 նոր տեսակների արտադրությունը, այդ թվում՝ հզոր գեներատորների, հիդրոտուրբինների, կաբելի արտադրությունը և այլն։ Ստալինյան ռայոնի արդյունաբերությունն այժմ երկրին տալիս է ավելի քան 200 տեսակի՝ միութենական նշանակություն ունեցող արտադրանք։

Հացահատիկի համախառն բերքը 1950 թվականին խոշոր չափով գերազանցեց 1940 թվականի բերքի մակարդակը։ Սոցիալիստական գյուղատնտեսության աշխատողները մեծ եռանդով ձեռնամուխ են եղել ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1950 թվականի մայիսի 30-ի՝ Հայկական ՍՍՌ-ում ցորենի արտադրությունն ավելացնելու վերաբերյալ պատմական որոշման կենսագործմանը, որը բազա կհանդիսանա ռեսպուբլիկան հացահատիկի սեփական պաշարով ապահովելու համար։

Ռեսպուբլիկայի աշխատավորները, ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին, կազմակերպված կերպով և կրկնապատկը-



ված եռանդով ձեռնամուխ են եղել 1951 թվականի խնդիրների կենսագործմանը։ Արդյունաբերական ձեռնարկությունների, ՄՏ կայանների և սովխոզների կոլեկտիվները շարունակ հանդես են բերում աշխատանքային հերոսության նորանոր օրինակներ, նորանոր նախաձեռնություններ, իրենց ավանդը մտցնելով մեր սոցիալիստական Հայրենիքի հզորության հետագա ամրապնդման գործում, Հայրենիք, որը խաղաղության պատվարն է ամբողջ աշխարհում։

Երևանի «Ավտոդետալ» գործարանի բանվորների, ծառայողների և ինժեներա-տեխնիկական աշխատողների կոլեկտիվը դիմել է Հայաստանի արդյունաբերության բոլոր աշխատողներին, կոչ անելով նրանց՝ Հայաստանի Կոմունիստական պարտիայի առաջիկա 15-րդ համագումարը նշանավորել նորանոր հաջողություններով, մտնել մրցության մեջ՝ ի պատիվ համագումարի։ Յուրացնելով նոր տեխնիկան, արտադրության մեջ լայնորեն արմատավորելով ստախանովական նովատորների՝ ընկ. ընկ. Ժ. Շահինյանի, Տ. Սարյանի, Գ. Խրխիկյանի և մյուս առաջավորների աշխատանքի առաջավոր մեթոդները, գերակատարելով արտադրական

պլանը և տալով արտադրանքի մեծ աճ, գործարանի կոլեկտիվը որոշել է ամրապնդել այդ հաջողությունները և հասնել արտադրական նոր հաջողությունների։

Ի նշանավորումն Հայաստանի Կոմունիստական պարտիայի առաջիկա Համագումարի, «Ավտոդետալ» գործարանի կոլեկտիվը կանգնել է ստախանովյան հերթափոխի, ստանձնելով հետևյալ պարտավորությունները. 1951 թվականի առաջին եռամսյակի արտադրական պլանը բոլոր ցուցանիշներով կատարել ժամկետից 10 օր առաջ, տալ գերազանց որակի արտադրանք։ Կոլեկտիվը պարտավորություն է ստանձնել ժամկետից շուտ կատարել կոմունիզմի մեծ կառուցումների պատվերները, յուրացնել նոր դետալների արտադրությունը, արմատավորել աշխատանքի առաջավոր մեթոդները, լրիվին օգտագործել սարքավորումները, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, գործնական օգնություն ցույց տալ գյուղատնտեսության աշխատողներին՝ գյուղատնտեսական մեքենաների նորոգումը ժամկետին կատարելու և նոր տեխնիկան յուրացնելու գործում։

«Ավտոդետալ» գործարանի աշխատողների նախաձեռնությունը հայրենասիրական նոր



նախաձեռնություն է։ Այն մեծ խանդավառությամբ դիմավորեցին ռեսպուբլիկայի արդյունաբերական բոլոր ձեռնարկությունների կոլեկտիվները։ Երևանի, Լենինականի և ռեսպուբլիկայի մյուս քաղաքների գործարանների ու ֆաբրիկաների ցեխերում տեղի ունեցան բազմամարդ միտինգներ, որտեղ բանվորները, ծառայողները, ինժեներա-տեխնիկական աշխատողները միահամուռ կերպով որոշեցին մտնել սոցիալիստական մրցության մեջ՝ ի պատիվ առաջիկա համագումարի։ Նրանք պարտավորվեցին ժամկետից շուտ կատարել համախառն արտադրանքի և ասորտիմենտի պետական արտադրական պլանը, բարձրացնել թողարկվող արտադրանքի որակը, առավելագույն չափով օգտագործել եղած սարքավորումները, մոբիլիզացնել ներքին ռեսուրսները, է՛լ ավելի կատարելագործել տեխնոլոգիական պրոցեսները։

Ի պատիվ առաջիկա համագումարի՝ տասնյակ հարյուրավոր արտադրական բրիգադաներ ու հերթափոխություններ ստախանովյան հերթափոխի են կանգնել և պայքարում են ստանձնած պարտավորությունները ժամկետից շուտ կատարելու համար։ Աշխատելով կրկնապատկված եռանդով, արդյունա-

ների կոլեկտիվնեբրական ձեռնարկությունների կոլեկտիվները արդեն ձեռք են բերել առաջին հաջողությունները եռամսյակի պլանների կատարման, էլեկտրաէներգիայի, վառելիքի և այլ նյութերի տնտեսման գործում։ Ագիտատորների խնդիրն է օգնել պարտիական կազմակերպություններին գլխավորելու աշխատավորների հայրենասիրական նոր նախաձեռնությունը, ուղղություն տալ արտադրական վերելքին՝ նոր նվաճումներ ձեռք բերելու համար։

Ագիտատորների խնդիրն է՝ ամենից առաջ, մասսաներին լայնորեն պարզաբանել «Ավտոդետալ» գործարանի աշխատողների նախաձեռնությունը, արտադրական ձեռնարկության կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի գիտակցությանը հասցնել այն, որ արձագանքելով «Ավտոդետալ» գործարանի աշխատողների դիմումին, մտնելով սոցիալիստական մրցության մեջ, դրանով իսկ նա իր ավանդն է ներդնում մեր Հայրենիքի հզորության հետագա ամրապնդման գործում։

Արդյունաբերական ձեռնարկությունների ցեխերում, ագրեգատներում հարյուրավոր ագիտատորներ լայնորեն մասսայականացնում են «Ավտոդետալ» գործարանի աշխատողների կոչը, կազմակերպելով զրույցներ։



Այդ զրույցների ընթացքում ագիտատորները յուրաքանչյուր աշխատողի ուշադրությունը կենտրոնացնում են այն բանի վրա, որ անհրաժեշտ է ժամկետից շուտ կատարել սետական առաջադրանքները, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, օգտագործել եղած ռեզերվները՝ հաշվի առնելով յուրաքանչյուր ձեռնարկության հնարավորությունները, գիտակցական վերաբերմունք հանդես բերել դեպի աշխատանքը։ Բոլշևիկյան ագիտատորները ճշմարտացի խոսքով և անմիջական աշխատանքով մասսաներին մոբիլիզացնում են ստանձնած պարտավորությունները կատարելու համար։

Ագիտատորների խնդիրն է՝ լայն դաստիարակչական աշխատանք ծավալել սոցիալիստական մրցության համար, մրցության մեջ ընդգրկել կոլեկտիվի ամեն մի անդամի, օգնել յուրաքանչյուրին գիտակցելու իր դերը ընդհանուր գործում, ճիշտ հաշվի առնելու իր ուժերն ու հնարավորությունները պարտավորություններ ստանձնելիս, օգնել կոլեկտիվի յուրաքանչյուր անդամին յուրացնելու աշխատանքի նոր մեթոդները։

Ամեն մի բանվոր, պարտավորություն ստանձնելով, մտածում է ամբողջ կոլեկտի-

վի մասին, նա շահագրգռված է իր կողքին աշխատողների, բրիգադայի, ցեխի աշխատանքով, շահագրգռված է այն բանում, որ բոլորը լավ աշխատեն։ Անհրաժեշտ է, որ ագիտատորը հաշվի առնի մրցության հրապարակայնության նշանակությունը և հասարակական ներգործման ուժը։ Անհրաժեշտ է լայնորեն անցկացնել արտադրական խորհրդակցություններ, բանվորական ժողովներ, որտեղ քննության առնել ստանձնած պարտավորութունների կատարման վերաբերյալ հարցեր, քննադատության ենթարկել այդ գործում եղած թերությունները, հասարակական ներգործման միջոցով վերացնել եղած բոլոր խոչընդոտները։

Ստանձնած պարտավորությունների կատարման ամենօրյա ստուգումը մրցության հաջողության գրավականն է։ Պատի թերթերի, «Կայծակ» թերթիկների, պատվո-տախտակների, լոզունգների, պլակատների միջոցով և այլ ձևերով ագիտատորները պետք է ամեն օր ցույց տան առաջիկա համագումարին նվիրված մրցության հաջողությունը, նրա ընթացքը։ Նրանք հմտորեն պետք է պատմեն աշխատանքի նոր մեթոդների մա-



սին, հանդես բերվող նորանոր նախաձեռնությունների մասին։ Արտադրության առաջավորների փորձի մասսայականացումը մեծ չափով օգնում է հետ մնացողներին առաջ մղելու գործին։ Ագիտատորները պարտավոր են ուսումնասիրել, ամփոփել և լայնորեն մասսայականացնել առաջավորների փորձը։

Թողարկվող արտադրանքի որակը բարձրացնելու, սարքավորումն ու տեխնիկան լրիվին օգտագործելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու և այլ գծերով ստանձնած պարտավորությունների կատարումը պահանջում է, որ աշխատողները օրավուր բարձրացնեն իրենց տեխնիկական պատրաստվածությունը։ Անհրաժեշտ է, որ ագիտատորները մշտապես պարզաբանեն տեխնիկական ուսուցման, տեխմինիմումին տիրապետելու դերն ու նշանակությունը։

«Ավտոդետալ» գործարանի աշխատողների կոչին արձագանքեցին նաև գյուղի աշխատավորները։ Նրանք պարտավորություն են ստանձնել ագրոտեխնիկական բարձր մակարդակով և ժամկետին անցկացնել գարնանացանը։ Գյուղական ագիտատորների

խնդիրն է «Ավտոդետալ» գործարանի աշխատողների կոչը հասցնել յուրաքանչյուր կոլխոզնիկի, ՄՏ կայանի և սովխոզի յուրաքանչյուր աշխատողի, մոբիլիզացնել գյուղի աշխատողներին նոր նվաճումների հասնելու համար։

Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի առաջիկա 15-րդ համագումարը մեծ իրադարձություն է ռեսպուբլիկայի աշխատավորների կյանքում։ Համագումարը արժանավայել կերպով, նոր նվաճումներով դիմավորելը ռեսպուբլիկայի աշխատավորների պատվի գործն է։

Մ. ԱՍԱՏՐՅԱՆ



ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ԵՐԵՎԱՆ ՔԱՂԱՔԻ ՄԻԿՈՅԱՆԻ ՌԱՅՈՆԸ

1950 թվականին Հայկական ՍՍՌ կառավարության որոշմամբ Երևանում կազմակերպվեց նոր՝ թվով 5-րդ ռայոնը, որը կոչվեց հայ ժողովրդի հարազատ զավակ ընկ. Ա. Ի. Միկոյանի անվամբ։

Միկոյանի անվան ռայոնը ընդգրկում է Արաբկիր, Ձեյթուն, Կիրզա, Կամարակ, Նորք ավանները և Նորքի նորակառույցները։ Բացի Նորքից, մնացած բոլոր ավանները ըստեղծվել են սովետական իշխանության տարիներին, ըստ որում Ձեյթուն, Կիրզա, Կամարակ ավաններն ընդամենը 3—4 տարվա պատմություն ունեն։

Օր-օրի փոխվում է ռեսպուբլիկայի մայրաքաղաքի այդ նոր ռայոնի տեսքը, բարձրանում են բնակելի շենքեր, կառուցվում են

դպրոցներ, ակումբներ, բժշկական, կուլտուրական և այլ հիմնարկներ, բացվում են նոր փողոցներ։

Ռայոնում առանձնապես մեծ թափով են աճում արտադրական ձեռնարկությունները։ Ընդամենը մի քանի տարի առաջ քաղաքի այդ մասում կային միայն մի քանի արտելներ՝ աշխատանքի իրենց տնայնագործական եղանակներով։ Այժմ Միկոյանի ռայոնում կան տասնյակ արդյունաբերական ձեռնարկություններ։ Այդ ձեռնարկություններից են ժամացույցի գործարանը, որի արտադրած ժամացույցները կարելի է տեսնել ոչ միայն մեր ռեսպուբլիկայի, այլև Միության շատ քաղաքների ու գյուղերի աշխատավորների բնակարաններում։ 1948 թվականին շահագործման հանձնվեց Արաբկիրի սարահարթում կառուցված Կահույքի ֆաբրիկան, որի արտադրած գեղեցիկ շիֆոներկաները, բուֆետները, գրապահարանները, սեղանները, աթոռները և այլ կահույքը զարդարում են Երևանի աշխատավորների բնակարանները։ Ռայոնում կառուցվել է Շամպայն գինիների գործարան, որը արտադրում է բազմա-



պիսի բարձրորակ գինիներ։ Շուտով նրա ներքնահարկերից դուրս կգա Հայաստանի առաջին շամպայնը։

Այժմ ռայոնում կառուցվում են մի քանի արդյունաբերական նոր ձեռնարկություններ, լայնացվում ու հզորացվում են եղած ձեռնարկությունների կարողությունները։ Մոտ ժամանակներս շահագործման կհանձնվեն էլեկտրալամպերի գործարանը, «Հայպանիրտրեստ»-ի սառցարանը, կսկսվեն նաև մի քանի այլ ձեռնարկությունների շինարարական աշխատանքները։

Ռայոնի բոլոր նորակառույց ավանները ստացել են էլեկտրական էներգիա։

Վերջին երեք տարիների ընթացքում ռայոնում խոշոր չափերով ընդարձակվեց ժողովրդական կրթության ցանցը։ 1946—1947 ուսումնական տարում եղած 5 դպրոցների փոխարեն այժմ գործում են 5 միջնակարգ, 4 յոթնամյա, 2 տարրական և 2 բաներիտ դպրոցներ, որոնցում սովորում է 12.000 աշակերտ, այսինքն երեք տարի առաջ ռայոնի դպրոցներում սովորողների թվից մոտ 6 անգամ ավելի։

Միայն անցած տարվա ընթացքում ռայոնում կառուցվեցին ընդարձակ, հարմար ու գեղեցիկ դպրոցական 4 շենք։

Ամբողջ մայրաքաղաքի հետ Միկոյանի անվան ռայոնը ապրում է կուլտուրական եռուն կյանքով։ Բնակչության կուլտուրական սպասարկման համար վերջին երեք տարիների ընթացքում ռայոնում ստեղծվել են 6 գրադարան, որոնցից 3 մասսայական և 3 մանկական, 25 հազար գրքային ֆոնդով, 3 ակումբ, կուլտուրայի 2 տուն, 3 խոշոր կինոթատրոն, որոնց դահլիճներում բացի կինոնկարներից, ռայոնի բնակիչները դիտում են նաև ներկայացումներ, լսում են համերգներ, դասախոսություններ և այլն։

Միկոյանի ռայոնում գտնվում են մի շարք գիտա-հետազոտական հիմնարկներ՝ Շինանյութերի ինստիտուտը Բուսաբանական ինստիտուտը, Բուսաբանական այգին, Կենդանաբանական այգին և այլն։

Մեր պետությունը ոչ մի միջոց չի խնայում քաղաքի նորաստեղծ ռայոնի բնակչության առողջապահության գործի համար։



Ռայոնի ընդարձակման, բնակելի նոր ավանների կառուցմանը զուգահեռ լայնանում է նրա բուժհիմնարկների ցանցը։ Այսպես, 1947 թվականին Արաբկիրում կար միայն առողջապահական 2 օբեկտ՝ բուժարանը և մանկական կոնսուլտացիան, իսկ այժմ ռայոնում գործում են 21 բուժհիմնարկներ՝ 277 բժշկա-սանիտարական աշխատողներով, 2 պոլիկլինիկա, հիվանդանոց, ծննդատուն, 6 առողջապահական կայան, շտապ օգնության կայան և այլն։

Ահա այսպիսին է, ընդհանուր գծերով, այսօր Երևանի՝ ընկ. Միկոյանի անունը կրող նորաստեղծ ռայոնը։ Իսկ ինչ վերաբերում է նրա ապագային, ապա մոտակա տարիներին նա կդառնա մայրաքաղաքի բարեկարգ, գեղեցիկ, կուլտուրական բուռն կյանքով ապրող ռայոններից մեկը, որը լրիվ չափով կբավարարի կոմունիստական հասարակակարգում ապրող սովետական մարդկանց բոլոր պահանջները։

Կոմիտասի փողոցը, որը քաղաքի 3-րդ շրջանային փողոցի մի մասն է կազմում և ունի 50 մետր լայնություն, երկու տարուց հետո կդառնա Երևանի ամենագեղեցիկ փո-

ղոցներից մեկը, նրանով կանցնեն տրամվա-յը, տրոլեյբուսը, ավտոբուսները: Մոտիկ տարիներին կառուցվելու են նաև մի շարք ուրիշ ընդարձակ ու բարեկարգ փողոցներ, որոնց երկու կողմերին կբարձրանան նոր բազմահարկ բնակելի տներ ու հասարակա-կան շենքեր:

Ռայոնում գտնվող Հաղթանակի կուլտու-րայի և հանգստի պարկը, որտեղ վեր է խո-յանում հայ ժողովրդի մեծ ազատարար, հա-րազատ Ստալինի հոյակապ մոնումենտ-քանդակը, դարձել է մայրաքաղաքի աշխա-տավորների սիրելի վայրերից մեկը:

Հ. ԱՋԻՋԲԵԿՅԱՆ



# ԻՆՉ ՈՐՈՇԵՑ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԽՈՐՀՐԴԻ ԱՌԱՋԻՆ ՍԵՍԻԱՆ

Ներկայումս սովետական ժողովրդի և ամ-բողջ աշխարհի պրոգրեսիվ մարդկության ուշադրության կենտրոնում են գտնվում Գեր-մանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի մայրաքաղաք Բեռլինում կայացած Խաղա-ղության Համաշխարհային Խորհրդի առաջին սեսիայի որոշումները, որոնք պատմական բացառիկ նշանակություն ունեն նոր պատե-րազմի ամերիկա-անգլիական հրձիգների մե-քենայությունների դեմ բոլոր երկրների աշ-խատավորներին մոբիլիզացնելու և համաշ-խարհային նոր պատերազմի սպառնացող վտանգը կանխելու գործում:

Ինչպես հայտնի է, 1950 թվականի նոյեմ-բերի 16—22-ը Լեհական ժողովրդական ռես-պուբլիկայի մայրաքաղաք Վարշավայում կայացավ Խաղաղության կողմնակիցների Համաշխարհային երկրորդ կոնգրեսը, որին

մասնակցում էին աշխարհի 81 երկրների 2065 ներկայացուցիչները։ Կոնգրեսը ստեղծեց Խաղաղության Համաշխարհային Խորհուրդ, որի հիմնական խնդիրն է հանդիսանում խաղաղության գործի պաշտպանությունը ամբողջ աշխարհում։

Խաղաղության Համաշխարհային Խորհուրդը իր առաջին սեսիան մտադիր էր անցկացնել Շվեցարիայի Ժընև քաղաքում, սակայն խաղաղության կողմնակիցների համաշխարհային շարժման թափից ու ծավալից ահաբեկված ու գազազած ամերիկա-անգլիական իմպերիալիստների թելադրանքով «անկախ» ու «դեմոկրատական» Շվեցարիայի կառավարությունը թույլ չտվեց, որ սեսիան կայանա այդ երկրում։ Այստեղ պետք է նշել նաև, որ ամերիկա-անգլիական իմպերիալիստների լկտիությունը հասավ այն աստիճանին, որ խաղաղության Համաշխարհային Խորհրդի նախագահ, ժամանակակից մեծագույն գիտնականներից մեկին՝ Ժոլիո-Կյուրիին թույլ չտվեցին տրանզիտով Արևմտյան Գերմանիայի տերիտորիայով անցնելու դեպի Բեռլին և մասնակցելու Խորհրդի սեսիային։ Խաղաղության Համաշխարհային Խորհրդի խնդրանքով Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի կառավարությունը մեծ հա-



ճույքով հյուրընկալեց սեսիայի մասնակիցներին։ Փետրվարի 21-ին, հանդիսավոր իրադրության մեջ, Բեռլինում բացվեց Խաղաղության Համաշխարհային Խորհրդի առաջին սեսիան։

Սեսիան քննության առավ և հաստատեց երկու հիմնական հարց. Խաղաղության Համաշխարհային Խորհրդի փոխնախագահ Պյետրո Նեննիի (Իտալիա) զեկուցումը «Խաղաղության կողմնակիցների Համաշխարհային երկրորդ կոնգրեսում մշակված ծրագրի իրագործումը» թեմայով և Խորհրդի Բյուրոյի անդամ Իվ Ֆարժի զեկուցումը՝ «Գերմանական և ճապոնական պրոբլեմների խաղաղ լուծումը» թեմայով։

Պյետրո Նեննին իր զեկուցման մեջ նշեց, թե ինչպես աշխարհի բոլոր ժողովուրդները մեծ խանդավառությամբ ողջունեցին խաղաղության կողմնակիցների Համաշխարհային երկրորդ կոնգրեսի որոշումները և մասնավորապես «Միավորված Ազգերի Կազմակերպությանն ուղղված դիմումը», ուր առաջարկվում էր խաղաղ կերպով կարգավորել կորեական պրոբլեմը՝ այնտեղից դուրս բերել բոլոր օտարերկրյա զորքերը և Կորեայի

ներքին հարցերի լուծումը թողնել իրեն՝ կորեական ժողովրդին, կիրառել այն բոլոր միջազգային համաձայնագրերը, որոնք արգելում են Գերմանիայի և Ճապոնիայի վերառազմականացումը և պահանջում են հաշտության պայմանագիր կնքել այդ երկրների հետ, վերջ տալ բռնի ուժով ժողովուրդներին գաղութային կախման մեջ պահելու փորձերին և ռասայական խտրականությանը և մի շարք այլ առաջարկներ, որոնց նպատակն է կանխել ագրեսիայի որևէ հնարավորություն ու ապահովել խաղաղություն ամբողջ աշխարհում։

Ինչպես զեկույցը, այնպես էլ Խաղաղության Համաշխարհային Խորհրդի մյուս անդամները սեսիայի ամբիոնից հայտարարեցին, որ այդ դիմումի մեջ առաջադրված առաջարկներից ոչ մեկը չի ընդունվել ոչ Միավորված Ազգերի Կազմակերպության Անվտանգության Խորհրդի, ոչ էլ Գլխավոր Ասամբլեայի կողմից։ Ընդհակառակը, ամերիկյան իմպերիալիստների թելադրանքով ՄԱԿ-ը, առանց տատանվելու, ավելի բարդացրեց դրությունը, ընդունելով իր այն խայտառակ զրպարտիչ որոշումը, որով Չի-



նաստանին մեղադրում է ագրեսիայի մեջ այն դեպքում, երբ ժողովրդական Չինաստանը կամավորների միջոցով աջակցելով ազատագրական արդարացի պատերազմ մղող կորեական ժողովրդին՝ իրագործում է իր սրբազան իրավունքը՝ պաշտպանելու իր սահմանները։

Իվ Ֆարժը (Ֆրանսիա), ինչպես և նրա զեկուցման առթիվ ելույթ ունեցողները, փաստերով մերկացրին ամերիկա-անգլիական իմպերիալիստների մեքենայությունները Արևմտյան Գերմանիայում և Ճապոնիայում այդ երկրները վերառազմականացնելու և նրանց ժողովուրդներին Սովետական Միության ու ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ նախապատրաստվող պատերազմում թնդանոթի միս դարձնելու ապարեղում։

Խաղաղության Համաշխարհային Խորհրդի սեսիան իր փետրվարի 25-ի երեկոյան նիստում միահամուռ կերպով ընդունեց Դիմում հինգ մեծ տերությունների միջև Խաղաղության Պակտ կնքելու մասին և բանաձև

Միավորված Ազգերի Կազմակերպության մասին։

Խաղաղության Պակտ կնքելու մասին դիմումի մեջ ասված է.

«Արձագանքելով ամբողջ աշխարհի միլիոնավոր մարդկանց ձգտումներին, ինչպիսին էլ որ լինի նրանց կարծիքը համաշխարհային պատերազմի վտանգ առաջացնող պատճառների մասին,

հանուն խաղաղության ամրապնդման և միջազգային անվտանգության ապահովման,

մենք պահանջում ենք Խաղաղության Պակտի կնքում հինգ մեծ տերությունների՝ Ամերիկայի Միացյալ Նահանգների, Սովետական Միության, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, Մեծ Բրիտանիայի և Ֆրանսիայի միջև։

Մենք Խաղաղության Պակտ կնքելու նպատակով հանդիպելուց մեծ տերություններից որևէ մեկի կառավարության հրաժարվելը կդիտենք, որպես այդ կառավարության ագրեսիվ դիտավորությունների վկայություն։

Մենք բոլոր խաղաղասեր երկրներին կոչ ենք անում պաշտպանել Խաղաղության



Պակտ կնքելու վերաբերյալ պահանջը, Պակտ, որը բաց լինի բոլոր պետությունների համար։

Մենք դնում ենք մեր ստորագրությունները այդ դիմումի տակ և կոչ ենք անում այն ստորագրելու բարի կամքի բոլոր մարդկանց ու բոլոր կազմակերպություններին, որոնք ձգտում են խաղաղության ամրապնդմանը»։

Ինչպես տեսնում ենք, Խաղաղության Համաշխարհային Խորհուրդը, աշխարհի բոլոր ժողովուրդների միասնական կամքն արտահայտող այդ իսկական համաշխարհային կազմակերպությունը ներկա ժամանակաշրջանի ամենահիմնական խնդիրը համարում է հինգ մեծ տերությունների՝ Սովետական Միության, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, Ամերիկայի Միացյալ Նահանգների, Մեծ Բրիտանիայի և Ֆրանսիայի միջև Խաղաղության Պակտի կնքումը։ Եվ դա միանգամայն հասկանալի է։ Չէ՞ որ այդ հինգ պետությունները, առանձնահատուկ դեր խաղալով միջազգային կյանքում, կրում են գլխավոր պատասխանատվությունը խաղաղության պահպանման համար։ Աչ-

խարհի բոլոր ժողովուրդները քաջ գիտեն, որ երբ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, և դեռ այդ պատերազմի ընթացքում, Ամերիկայի Միացյալ Նահանգների ու Անգլիայի ղեկավարող ռեակցիոն շրջանները ստեղծեցին բլոկ՝ ջախջախված հիտլերյան ֆաշիզմի ու ճապոնական ռազմամոլների փոխարեն աշխարհը տիրելու և նրա վրա իրենց գիշատիչ տիրապետությունը հաստատելու ցնորամիտ ձգտումներով, երկրագնդի վրա նորից կախվեց պատերազմի վտանգը, այս անգամ պատերազմի գլխավոր օջախները Բեռլինից ու Տոկիոյից փոխադրվեցին Վաշինգտոն և Լոնդոն։

Բոլոր խաղաղասեր ժողովուրդները, համախմբվելով խաղաղության մեծ պատվար ու ավանգարդ Սովետական Միության շուրջը, լայն կամպանիա ծավալեցին խաղաղությանը սպառնացող վտանգը կանխելու և խաղաղության ու անվտանգության գործը ապահովելու համար։

Խաղաղության Համաշխարհային Խորհրդի կարևոր բանաձևերից մեկն էլ Միավորված Ազգերի Կազմակերպության մասին ընդունած բանաձևն է։ Այդ բանաձևում ասված է.



«Խաղաղության Համաշխարհային Խորհուրդը արձանագրեց, որ ՄԱԿ-ը չի պատասխանել Համաշխարհային երկրորդ Կոնգրեսի Դիմումին, կարծես թե խաղաղության պաշտպանության վերաբերյալ հարյուր միլիոնավոր մարդկանց ներկայացուցիչների առաջարկները իրեն չեն վերաբերում։

Այդ դիմումն ընդունելու ժամանակվանից ի վեր Միավորված Ազգերի Կազմակերպությունը շարունակել է խաբել այն հույսերը, որ ժողովուրդները դրել էին նրա վրա, և ծայրահեղության հասավ իր այն բանաձևում, որով դատապարտում է Չինաստանին որպես «ագրեսորի»։

Նա վավերացրել և իր հեղինակությամբ քողարկում է ամերիկյան զինված ուժերի կողմից Կորեայի համարյա մեկ միլիոն մարդկանց՝ ծերունիների, կանանց և երեխաների ոչնչացումը, որոնք ճզմվել կամ այրվել են իրենց քաղաքների և գյուղերի փլատակների տակ»։

Խաղաղության համաշխարհային խորհուրդը որոշեց Միավորված Ազգերի Կազմակերպություն ուղարկել մի շարք երկրների ականավոր հասարակական և կուլտուրական գործիչների դելեգացիա և այդ դելեգացիային

լիազորեց Միավորված Ազգերի Կազմակերպությունից պահանջելու՝

«1. Քննարկել Խաղաղության Կողմնակիցների Համաշխարհային Կոնգրեսի Բյուրոյի զանազան կետերն ու Խաղաղության Համաշխարհային Խորհրդի զանազան բանաձևերը և իր կարծիքը արտահայտել դրանց մասին։

2. Վերադառնալ այն դերին, որը նրան հատկացրել է Կանոնադրությունը, որպեսզի դառնա կառավարությունների միջև համաձայնության վայր, և ոչ թե որևէ տիրապետող խմբի գործիք»։

Խաղաղության Համաշխարհային Խորհուրդը, արտահայտելով ամբողջ աշխարհի պրոգրեսիվ մարդկության կամքը, հայտարարում է, որ «սույն գործողությունը կպաշտպանվի հարյուր միլիոնավոր տղամարդկանց և կանանց կողմից, որոնք իրավունք ունեն աչալուրջ կերպով հետևելու, որպեսզի գերագույն միջազգային օրգանները շղավաճանեն խաղաղությունը պահպանելու իրենց խնդրին»։

Խաղաղության Համաշխարհային Խորհուրդի առաջին սեսիան ընդունեց խոշոր նշանակություն ունեցող մի շարք այլ բանաձևեր, ինչպես օրինակ գերմանական, ճապոնական, և կորեական հարցերի խաղաղ կարգավոր-



ման մասին, Միավորված Ազգերի Կազմակերպության այն որոշման մասին, որը անարդարացիորեն Չինական ժողովրդական ռեսպուբլիկային դատապարտում է որպես «ագրեսոր» Կորեայում, գաղութային և կախյալ երկրներում խաղաղության համար մղվող պայքարի մասին, «Խաղաղություն» ժուռնալի, Խաղաղության միջազգային մրցանակների և այլ հարցերի մասին։

Սեսիան ելնելով Խաղաղության կողմնակիցների Համաշխարհային երկրորդ կոնգրեսի ցուցումներից, որոշեց ընդլայնել Խաղաղության Համաշխարհային Խորհրդի կազմը, այնտեղ լրացուցիչ կարգով ընտրելով 38 նոր անդամների։

Այժմ բոլոր երկրների ժողովուրդների սեփականությունն են դարձել ամբողջ պրոգրեսիվ մարդկության մեծ առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի ցուցումներն այն մասին, որ «Խաղաղությունը կպահպանվի և կամրապնդվի, եթե ժողովուրդները խաղաղության պահպանման գործը վերցնեն իրենց ձեռքը և այն պաշտպանեն մինչև վերջը։ Պատերազմը կարող է դառնալ անխուսափելի, եթե պատերազմի հրձիգներին հաջողվի կեղծիքով մոլորեցնել ժողովրդական մաս-

*տաներին, նրանց խաբել և նրանց ներգրավել համաշխարհային նոր պատերազմի մեջ։*

*Ուստի խաղաղության պահպանման համար լայն կամպանիան, որպես պատերազմի հրձիգների հանցավոր մեքենայությունների մերկացման միջոց, այժմ առաջնակարգ նշանակություն ունի»։*

*Կենսագործելով մեծ առաջնորդ ընկեր Ստալինի պատմական ցուցումները, սովետական ժողովուրդը նորանոր նվաճումներ ձեռք կբերի աշխատավոր մարդկության խաղաղության ու անվտանգության մեծ գործի հաստատուն պատվար Սովետական Միության միջազգային դիրքերի է՛լ ավելի ամրապնդման համար մղվող պայքարում։*

*Հ. ՀՈՎՍԵՓՅԱՆ*



# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.*

ՕՐԵՆՔՆԵՐ ԵՎ ՈՐՈՇՈՒՄՆԵՐ Սովետական կնոջ իրավունքների մասին: *71 էջ, գինը 1 ռ. 20 կոպ.։*

Ի. ԳՐԻՇԱՇՎԻԼԻ.— Բանաստեղծություններ: *279 էջ, գինը 8 ռ. 75 կոպ.։*

ՏԻՐԱՆ ԹՈՒՄԻԿՅԱՆ.— Նորարարության ուղիով: *32 էջ, գինը 50 կոպ.։*

ՏԻՄՈՖԵՅ ՍԳԵՆ.— Իմ փորձը: *34 էջ, գինը 65 կոպ.։*

Ա. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ.— Ռեսպուբլիկայի առաջավոր ՄՏ կայանը: *49 էջ, գինը 80 կոպ.։*

Ալ. ՄԱՆԱՍՅԱՆ.— Գյուղատնտեսական կենդանիների անպտղությունը և պայքարը նրա դեմ: *88 էջ, գինը 1 ռ. 50 կոպ.։*

Ա. Ա. ՄԱԹԵՎՈՍՅԱՆ.— Ինչպես ֆանտանցիները ստացան յուրաքանչյուր հեկտարից 16 ցենտներ կորնգանի սերմ: *20 էջ, գինը 30 կոպ.։*



Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении

БЛОКНОТ АГИТАТОРА

№ 5 1951 г.

ՎՖ 00961 Պատվեր № 193 Տիրաժ 10.000

Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան, Երևան